Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք

ՀԿ(Բ)Պ ԿԵՆՏԿՈՄԻ
ՊՐՈՊԱԳԱՆԴԱՅԻ ԵՎ
ԱԳԻՏԱՑԻԱՅԻ ԲԱԺԻՆ

# Ագիտատորի ԲԼՈԿՆՈՏ

№ 13 ՀՈՒՆԻՍ 1947

«ՍՈՎԵՏԱԿԱՆ ՀԱՅԱՍՏԱՆԻ» ՀՐԱՏԱՐԱԿՉՈՒԹՅՈՒՆ

# ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ

**Գյուղատնտեսական թեմաների շուրջը**

Հ. Մարջանյան.— *Բերքահավաքը գյուղատնտեսական աշխատանքների վճռական էտապն է* . . . . . . . . 1
*Կոլխոզի բերքահավաքի պլանը* . . . . 12

**Օգնություն ագիտատորին**

*Ագիտացիոն-մասսայական աշխատանքը բերքահավաքի ժամանակ* . . . . 19

**Զրույց դաշտում**

Ն. Ղոլունց.— *Բերքը կհավաքենք անկորուստ* 28

**Կարդա բարձրաձայն**

Ի. Խաչատրյան.— *Նրանք կատարում են առաջնորդին տված խոստումը* . . . . 33

**Զրույցներ Ստալինյան հնգամյակի մասին**

1. *Վերածնված Դնեպրոգէսը* . . . . 39
2. *Պարարտանյութ գյուղատնտեսությանը* . . 47

*Հուլիս ամսի օրացույց* . . . . . . 51



# ԲԵՐՔԱՀԱՎԱՔԸ ԳՅՈՒՂԱՏՆՏԵՍԱԿԱՆ ԱՇԽԱՏԱՆՔՆԵՐԻ ՎՃՌԱԿԱՆ ԷՏԱՊՆ Է

*Բերքահավաքը գյուղատնտեսական աշխատանքների ամենապատասխանատու ժամանակաշրջանն է, երբ ամփոփվում են սոցիալիստական դաշտերում կոլխոզնիկների և կոլխոզնիկուհիների ներդրած քրտնաջան աշխատանքի արդյունքները, երբ վճռվում է գյուղատնտեսական կուլտուրաների բարձր բերքատվության համար մղվող պայքարի ելքը։*

*Բարձր բերքի համար մղվող պայքարի առաջին էտապում Սովետական Հայաստանի կոլխոզային աշխատավորությունը լավ արդյունքներ ձեռք բերեց։ Այս տարի ժամկետից շուտ, ագրոտեխնիկական բարձր ցուցանիշներով ավարտվեցին գարնանացանի աշխատանքները։ Գարնանացանի պլանը Ռեսպուբլիկայում կատարվեց 100,8 տոկո-*

տով, այդ թվում հացահատիկային կուլտուրաներինը՝ 102,1 տոկոսով, բամբակի ցանքն ավարտվեց ժամկետից 10 օր շուտ, շաքարի ճակնդեղինը ժամկետից 15 օր շուտ, բարձրորակ ու վաղ ժամկետներում կատարվեց նաև կտավատի, կարտոֆիլի ցանքը:

Նախորդ տարիների համեմատությամբ ավելի հաջող և որակական բարձր ցուցանիշներով է կատարվում ցանքերի մշակումն ու խնամքը: Առաջավոր ագրոտեխնիկայի կիրառման շնորհիվ կոլխոզային դաշտերում աճում է հացահատիկային կուլտուրաների բարձր բերք:

Հետ չեն մնում նաև Ռեսպուբլիկայի բամբակագործները, ծխախոտագործները ճակնդեղագործները, այգեգործները, որոնք բոլշևիկորեն պայքարում են առաջնորդին տված խոստումը պատվով կատարելու և գերակատարելու, բարձր բերք նվաճելու համար:

Քրտնաջան աշխատանքի շնորհիվ կոլխոզային դաշտերում աճած բուսածածկը վկայում է այս տարվա առատ բերքի մասին:

Սակայն բերքի համար մղվող պայքարի ամենապատասխանատու և վճռական էտապը դեռ առջևում է—դա բերքահավաքն է:



Լավ աճեցրած բերքը կարելի է կորցնել, բերքահավաքը վատ նախապատրաստելու և անցկացնելու հետևանքով: Ներկայումս կարևորագույն խնդիր է բերքահավաքի լավագույն նախապատրաստությունն ու հաջող անցկացումը:

ՀամԿ(բ)Պ Կենտկոմի փետրվարյան պլենումը պահանջեց վերջ տալ գյուղատնտեսության ասպարեզում այնպիսի լուրջ թերությունների, ինչպես գյուղատնտեսական աշխատանքների նախապատրաստման և անցկացման գործում հարկ եղած օպերատիվության բացակայությունը և ուշացումը: Այդ հատկապես կարևոր է բերքահավաքի ժամանակ, որովհետև՝ «Բերքահավաքը,—ասում է ընկեր Ստալինը,—սեզոնային գործ է և նա սպասել չի սիրում: Բերքը ժամանակին հավաքեցիր— կշահե՛ս, ուշացրիր բերքահավաքը— տանու՛լ կտաս»:

Բերքահավաքը կազմակերպված անցկացնելու համար չափազանց կարևոր է նրան պատրաստվել վաղօրոք, այն չհետաձգել ուշ ժամկետների, խուսափել հապճեպությունից, որն անշուշտ անդրադառնում է նախապատրաստական աշխատանքների որակի վրա, տեղիք է տալիս բերքահավաքի ձգձըգ-

ման, իսկ դա իր հերթին բացասաբար է ազդում բերքահավաքի աշխատանքների նորմալ ընթացքի վրա և բերքի կորուստի պատճառ է դառնում:

Ներկայումս Ռեսպուբլիկայի կոլխոզները գտնվում են մասսայական բերքահավաքի նախօրյակին: Մի քանի օրից հետո կսկսվի կոլխոզային դաշտերում քրտնաջան աշխատանքով աճեցված առատ բերքի հավաքումը: Մեր կոլխոզային աշխատավորությունը ներկայումս տոգորված է մի մտքով, մի կամքով—արագ և անկորուստ հավաքել բերքը, ապահովել հարազատ պետության նկատմամբ ունեցած պարտավորությունների առաջնահերթ կատարումը:

Բերքահավաքը գյուղատնտեսական աշխատանքների ամենալարված ժամանակաշրջանն է, երբ ամբողջ տարվա ընթացքում կատարված աշխատանքի արդյունքները պետք է հավաքվեն մի քանի օրում: Ուստի հարկավոր է բերքահավաքին պատրաստվել խնամքով, վաղօրոք նախատեսել ամեն բան, ինչ կապահովի նրա հաջողությունը:

Ռեսպուբլիկայի բազմաթիվ առաջավոր ՄՏԿ-ներ ու կոլխոզներ արդեն լավագույն ձևով ավարտել են բերքահավաքի մեքենա-



ների ու գյուղատնտեսական գործիքների, ինչպես նաև տրանսպորտային միջոցների նորոգումն ու նախապատրաստումը բերքահավաքին: Այսպես օրինակ՝ Ղարիբջանյանի ՄՏ կայանը լրիվ ավարտել է 14 կոմբայնի և 3 կալսիչի բարձրորակ նորոգումը, Բասարգեչարի ՄՏ կայանը, որն ունի հզոր կոմբայնային պարկ, լրիվ ավարտել է 30 կոմբայնի և 8 կալսիչի նորոգումը: Այդ շրջանի խոշոր հացահատիկային կոլխոզները նույնպես ավարտել են գյուղգործիքների նորոգումն ու առանձնացրել փոխադրական միջոցները բերքահավաքի աշխատանքների համար:

Բերքը հաջող և անկորուստ հավաքելու գործում վճռական նշանակություն ունի բերքահավաքի աշխատանքների ճիշտ կազմակերպումը: Իսկ ի՞նչ է նշանակում ճիշտ կազմակերպել բերքահավաքի աշխատանքները: Դա նշանակում է կոլխոզների ու ՄՏ կայանների մեքենայական պարկի, կոլխոզային աշխատող ձեռքերի, փոխադրական միջոցների ու քաշող ուժի այնպիսի դասավորում, որն ապահովի հացահատիկի հնձի, փոխադրման, կալսման ու պետական պարտավորությունների կատարման զուգորդված, անընդմեջ աշխատանքը:

Աշխատանքը ճիշտ և լավ է կազմակերպված լինում այն ժամանակ, երբ դա պլանավորված է։ Ուստի բերքահավաքին նախապատրաստվելու կարևորագույն խնդիրներից մեկը կոլխոզներում և մեքենա-տրակտորային կայաններում բերքահավաքի աշխատանքային պլաններ կազմելն է։

Յուրաքանչյուր կոլխոզում, ՄՏ կայանում, բոլոր տրակտորային և դաշտավարական բրիգադաներում ու օղակներում վաղօրոք պետք է կազմվեն բերքահավաքի կոնկրետ աշխատանքային պլաններ, որոնց մեջ անհրաժեշտ է նախատեսել բերքը ժամանակին և անկորուստ հավաքելու հետ կապված բոլոր հարցերը — գյուղատնտեսական մեքենաների ու գործիքների, քաշող ուժի և աշխատող ձեռքերի պահանջն ու դասավորումը, բերքահավաքի սկիզբն ու վերջը, տվյալ արտադրական միավորի օրական առաջադրանքը, ապահովելով յուրաքանչյուր օղակի, կոլխոզնիկի կատարած աշխատանքի և առանձին կուլտուրաներից նրանց ստացած բերքի ճիշտ հաշվառումը։

Այդ պլաններում առանձին տեղ պետք է գրավի պետական պարտավորությունների ժամանակին կատարումը, որը յուրաքան-



չյուր կոլխոզի ամենաառաջնահերթ ու սրբազան պարտականությունն է։

Միևնույն ժամանակ պետք է պլանավորել նաև բերքահավաքին զուգընթաց կատարվող գյուղատնտեսական այլ աշխատանքները։

Բերքահավաքի աշխատանքների այսպիսի պլանավորումը լուրջ և պատասխանատու գործ է, որին պետք է մասնակից դարձնել գյուղատնտեսության մասնագետներին, կոլխոզային ակտիվը։ Պլանները պետք է քննության առնվեն կոլխոզային, բրիգադային ժողովներում, պետք է լսել և հաշվի առնել կոլխոզնիկների առաջարկները, որոնք մեծ չափով կօգնեն գործին։

Եթե յուրաքանչյուր բրիգադա, օղակ, յուրաքանչյուր կոլխոզնիկ լավ գիտենա, թե ինչ առաջադրանք է տրված իրեն, թե նա դաշտում, կալում ի՞նչ պետք է անի, ի՞նչ մեքենաներ, գործիքներ, անասուններ, ի՞նչ հողամաս է ամրացված իրեն, նրա աշխատանքը կլինի ավելի արդյունավետ։ Որքան ռեալ լինեն կոլխոզների, բրիգադաների, օղակների պլանները, այնքան ժամանակին և անկորուստ կկատարվի բերքահավաքը։

Բերքահավաքի գործում կարևոր նշանա-

կության ունի կորուստների դեմ պայքար կազմակերպելը։ Հացահատիկի մեծ կորուստ տեղի է ունենում գլխավորապես բերքահավաքի ձգձգման հետևանքով։ Երբ հացահատիկը ժամանակին չի հնձվում, հասկերը կծղում են և հատիկները թափվում։ Այդ գլխավորապես վերաբերում է մեր կոլխոզներում մշակվող աշնանացան ցորենի «ուկրաինկա» սորտին, որի բերքահավաքը մի քանի օր ուշացնելու դեպքում կարելի է կորցնել բերքի զգալի մասը։

Այս բանից խուսափելու համար անհրաժեշտ է կիրառել ընդհանուր տարածությունից առանձին հասունացած հողամասերի ընտրովի հնձումը ձեռքով, չսպասելով ամբողջ տարածության լրիվ հասունացմանը։ Իսկ երբ ամբողջ տարածությունը լրիվ հասունացած է, արդեն կարելի է սկսել կոմբայնային բերքահավաքը։

Բերքի կորուստի դեմ պայքարելու միջոցներից մեկն էլ այն է, որ հնձված հացահատիկը անմիջապես պետք է կալսել, դիզել ու խնամքով փոխադրել կալը՝ կալսելու համար։ Այդ աշխատանքների միջև խզում թույլ տալը նույնպես բերքի կորուստի պատճառ է դառնում։

Բերքի զգալի կորուստ է գոյանում նաև



հնձի ժամանակ դաշտում թափվող հասկերը ժամանակին և մաքուր չհավաքելու հետևանքով։ Այդ բանի վրա հարկ եղած ուշադրություն չի դարձվում, համարելով դա չնչին։ Մինչդեռ հաշիվները ցույց են տվել, որ եթե ամեն մի քառակուսի մետրի վրա մնա չհավաքած երկու հասկ, ապա մեկ հեկտարից հացահատիկի կորուստը կկազմի 15—20 կիլոգրամ, ամբողջ ցանքատարածությունից կկորչի հսկայական քանակությամբ հացահատիկ։ Իսկ չէ՞ որ հացահատիկի կորուստը նվազեցնում է մեր մթերային ռեսուրսները, իջեցնում է կոլխոզնիկների աշխօրի արժեքը։

Յուրաքանչյուր կոլխոզնիկ պետք է գիտակցի, որ անկորուստ բերքահավաքը պետական կարևոր խնդիր է, որ ամեն մի հասկի մեջ ներդրված է կոլխոզնիկի քրտնաջան աշխատանքը։ Ուստի այն բոլորը, ինչ աճեցված է դաշտում, պետք է անկորուստ հավաքվի։ Անտնտեսվարությունը բերքահավաքի ընթացքում խոշոր հարված է կոլխոզի և պետության շահերին։

Մեծ նշանակություն ունի բերքահավաքի ժամկետի ճիշտ ընտրությունը՝ յուրաքանչյուր կոլխոզի, բրիգադայի, օղակի դաշտերի համար, նկատի ունենալով որ բերքի կորուստի զգալի մասը տեղի է ունենում գլխավորապես բերքահավաքի աշխատանքները ձգձգելու հետևանքով։

Բերքահավաքը աշխատանքի ծավալի և լարվածության տեսակետից գյուղատնտեսական արտադրության մեջ ամենադժվար և ամենապատասխանատու շրջանն է, որովհետև բերքահավաքին զուգընթաց կատարվում են աշնանավարի, ցրտահերկի, լեռնային շրջաններում նաև աշնանացանի աշխատանքները։

Ուստի բերքահավաքի շրջանում պահանջվում է ուժերի առավելագույն լարում և ամբողջ կոլխոզային աշխատավորության մասնակցության ապահովում բերքահավաքի աշխատանքներին։ Ո՛չ մի աշխատունակ կոլխոզնիկ չպետք է դուրս մնա բերքահավաքի աշխատանքներից։ Առավելագույն չափով կրճատելով կողմնակի և գրասենյակային աշխատողների քանակը, նրանց մասնակից դարձնելով բերքահավաքի աշխատանքներին, բերքահավաքի ընթացքում նրանց



ամրացնելով առանձին բրիգադաների ու օղակների հնարավոր կլինի ավելի սեղմ ժամկետում կատարել բերքահավաքը։

Մտնելով Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի 30-ամյակի պատվին ծավալված Համամիութենական սոցիալիստական մրցության մեջ, Սովետական Հայաստանի գյուղատնտեսության աշխատողները ընկեր Ստալինին ուղղված իրենց նամակում պարտավորվեցին, անշեղորեն կենսագործելով ՀամԿ(բ)Պ Կենտկոմի փետրվարյան պլենումի նշած միջոցառումները, նոր հնգամյակի երկրորդ տարում հասնել գյուղատնտեսական կուլտուրաների բարձր բերքատվության, սոցիալիստական անասնապահության աճման և նրա մթերատվության բարձրացման։

Մոբիլիզացիայի ենթարկելով բոլոր ուժերը, կազմակերպված և անկորուստ անցկացնենք բերքահավաքը, ժամանակին կատարենք պետության հանդեպ ունեցած բոլոր պարտավորությունները, պատվով իրագործենք սիրելի առաջնորդին տված խոստումը։

Հ. ՄԱՐՋԱՆՅԱՆ

ՀԿ(բ)Պ Կենտկոմի Գյուղատնտեսական բաժնի վարիչ

# ԿՈԼԽՈԶԻ ԲԵՐՔԱՀԱՎԱՔԻ ՊԼԱՆԸ

Ոսկեզօծվում են Աշտարակի շրջանի Եղվարդ գյուղի Ստալինի անվան կոլխոզի դաշտերը։ Խիտ ու փարթամորեն աճած հացահատիկի հասկերը ծանր խոնարհել են գլուխները։ Առատ բերք են հավաքելու այս տարի Եղվարդի կոլխոզնիկները, որոնք ամեն ջանք գործադրում են ՀամԿ(բ)Պ Կենտկոմի փետրվարյան պլենումի պատմական որոշումը կենսագործելու, սիրելի առաջնորդ Ստալինին տված խոստումը պատվով կատարելու համար։

Կոլխոզի հացահատիկային ցանքերը կազմում են 2800 հեկտար, որից միայն աշնանացանը՝ 2170 հեկտար։ Եղվարդցիները պարտավորվել են այս տարի աշնանացան ցորենի յուրաքանչյուր հեկտարից ստանալ միջին հաշվով 12 ցենտներ բերք՝ նախատեսված 10 ցենտների փոխարեն, իսկ ա-



ռաջավոր օղակները խոստացել են հեկտարից ստանալ 25-30 ցենտներ հացահատիկ։ Այսպես օրինակ՝ Լյուդվիկ Սաֆարյանի օղակը 8 հեկտար տարածության յուրաքանչյուր հեկտարից խոստացել է ստանալ 25 ցենտներ բերք, նույնքան՝ Արտավազդ Միքայելյանի օղակը, իսկ Գրիգոր Սաֆարյանի օղակը խոստացել է 8 հեկտար տարածության յուրաքանչյուր հեկտարից ստանալ 30 ցենտներ հացահատիկ։ Իրենց խոստումը պատվով կատարելու համար նրանք աշխատել են շատ ու քրտնաջան։ Այդ են ցույց տալիս կոլխոզի արտերը, որոնք տեսնողին հիացմունք են պատճառում։

Բայց լավ բերք աճեցնելը դեռ բոլորը չէ։ Լավ բերքը արժեքավոր է դառնում այն ժամանակ, երբ լավ էլ հավաքվում է։ Այս բանը հիանալի հասկանում են կոլխոզի ղեկավարները։ Եվ դեռ այն ժամանակ, երբ դաշտերում հացահատիկը նոր էր սկսել հասունանալ, կոլխոզի նախագահ՝ Հայկական ՍՍՌ Գերագույն Սովետի դեպուտատ Հայկ Սարգսյանը, կոլխոզի ագրոնոմ Ռոզա Բադիկյանի, բրիգադիրներ Գևորգ Գևորգյանի, Վաղարշակ Ալավերդյանի, կոլխոզի հաշվապահի, մի քանի օղակավարների և հր-

մուտ կոլխոզնիկների հետ միասին ձեռնարկեցին կոլխոզի բերքահավաքի մանրամասն պլանը կազմելուն։ Շատ ժամանակ և աշխատանք պահանջեց այդ—հարկավոր էր հաշվի առնել ամեն բան՝ սկսած մարդկանց զանազան աշխատանքներում դասավորելուց, մինչև գերանդու և մանգաղի, հեսանի և փոքրիկ դույլերի մասին հոգալը։ Երբ պլանի նախագիծը պատրաստ էր, այն դըրվեց կոլխոզնիկների ընդհանուր ժողովի քննարկմանը, ըստ որում հաշվի առնվեց կոլխոզնիկների ամեն մի ելույթը, ամեն մի խելացի առաջարկը։

Ի՞նչ է նախատեսում կոլխոզի բերքահավաքի պլանը։ Ամենից առաջ բերքահավաքի ժամկետը։ Պլանի համաձայն կոլխոզի 15 դաշտավարական բրիգադները բերքահավաքն ավարտելու են 45 աշխատանքային օրում, ըստ որում հունձը տևելու է 30 օր։

Բերքահավաքը պահանջում է մեծ արագություն։ Իսկ դրա համար հարկավոր է մոբիլիզացնել կոլխոզի բոլոր աշխատող ձեռքերը։ Այդ նկատի ունենալով, կոլխոզի վարչությունը հնարավոր գտավ բերքահավաքի շրջանում կոլխոզի աշխատող



ձեռքերը լրացնել այլ աշխատանքներում զբաղված կոլխոզնիկներով։ Օրինակ՝ քարահանքերում աշխատողներից վերցվում է 25 կոլխոզնիկ, շինարարական բրիգադայից՝ 40 կոլխոզնիկ։ Բացի դրանից, բերքահավաքի աշխատանքներում ներգրավվելու են դպրոցի աշակերտներից 335 հոգի։ Նախատեսված է նաև աշխատանքի ներգրավել ամառը գյուղ վերադարձող ուսանողներին։ Այսպիսով, բերքահավաքի շրջանում կոլխոզը կունենա 1.400 աշխատող ձեռք։

Հիմնական աշխատանքները կատարվելու են հետևյալ կերպ։ Պայմանագրի համաձայն ՄՏ կայանը պետք է իր կոմբայններով հավաքի 200 հեկտարի բերքը, իսկ մնացած 2600 հեկտարի բերքը հավաքելու է կոլխոզը, ձեռքի գործիքներով՝ գերանդիներով և մանգաղներով։ Գերանդավորի համար օրական հնձի նորման սահմանված է 0,75 հեկտար, մանգաղավորի համար՝ 0,07 հեկտար։ Օղակավարներից և մանգաղավորներից մի քանիսը օրվա ընթացքում հնձի փոխարեն խուրձ են կապելու։ Բրիգադան օրական հնձելու է 6 հեկտար։ Հնձվորները աշխա-

տելու են գործարքային սիստեմով։

Կորուստների դեմ պայքարելու համար բերքահավաքի պլանը նախատեսում է մի շարք միջոցառումներ։ Նախ, որ հնձածը անպայման խուրձ է կապվելու, որի համար բրիգադաներում առանձնացված են խուրձ կապողներ։ Խուրձ կապելու օրական նորման սահմանված է 0,5 ճեկտար։ Օրվա հնձածը խուրձերով դիզվելու է դաշտում և հաջորդ օրը անպայման փոխադրվելու է կալ։ Բրիգադաներն ունեն նաև հասկ հավաքող օղակներ՝ 8—10 հոգուց բաղկացած, որոնց մեծ մասը պիոներներ են։

Յուրաքանչյուր բրիգադան ունի 5 սայլ և 10 սայլավոր։ Բոլոր բրիգադաները ապահովված են գերանդիներով, մանգաղներով, փոցխերով, հեսաններով։

Կատարված աշխատանքի քանակը և որակը վերահսկելու համար բոլոր տեսակի աշխատանքներն ընդունվելու են հանձնաժողովի կողմից, հատուկ ակտեր կազմելով։ Աշխատանքի այս պրակտիկան կոլխոզը վաղուց է կիրառում։

Կոլխոզի կալատեղերը լրիվ պատրաստ են։ Յուրաքանչյուր բրիգադա ունի իր կալը։



կալսումը կատարվելու է առանձին-առանձին՝ ըստ բրիգադաների։ ՍՍՌՄ Գերագույն Սովետի Նախագահության հրամանագիրը՝ գյուղատնտեսության առաջավորներին Սոցիալիստական Աշխատանքի Հերոսի կոչում շնորհելու և ՍՍՌՄ շքանշաններով ու մեդալներով պարգևատրելու մասին, բացառիկ ակտիվություն է առաջացրել կոլխոզնիկների մեջ։ Յուրաքանչյուրը ձգտում է արժանանալ կառավարական պարգևի։ Այս կապակցությամբ խիստ մեծանում է հաշվառման և վերահսկողության դերը։

Պլանի համաձայն,բարձր բերքի օղակները հնձում, հնձածը փոխադրում և կալսում դիզում են առանձին։ Դեզի վրա ամրացվում է տախտակ, օղակավարի անուն-ազգանունով։ Օղակը կալսում է նույնպես առանձին, ստացած բերքը հաշվի է առնվում ագրոնոմի ու բրիգադիրի կողմից, ապա բերքն ընդունում է հատուկ հանձնաժողովը։

Ի՞նչպես է կազմակերպվելու աշխատանքը կալում։ Յուրաքանչյուր բրիգադա ունի 3-4 կալվոր, որոնց տրամադրության տակ դրվում է մեկ քամհար, որին ամրացված է երեք կոլխոզնիկ։ Յուրա-

*քանչյուր կալվոր օրական կամերով կալսելու է երեք ցենտներ բերք։*

*Կոլխոզն ունի նաև 2 բարդ կալսիչ մեքենա, որոնցից յուրաքանչյուրին ամրացված է 12 կոլխոզնիկ։ Կալսիչներն աշխատելու են 24 ժամ անընդհատ։ Կալսված հացահատիկը կշռվելու և պահեստ է փոխադրվելու կալսելուց և զտելուց անմիջապես հետո։*

*Հացամթերումները ժամանակին և լրիվ կատարելը կոլխոզնիկների առաջնահերթ և սրբազան պարտականությունն է, նրանց առաջին պատվիրանը։ Ուստի եղվարդցիները որոշել են հենց առաջին կալից սկսել պետական պարտավորությունների հանձնումը։ Կոլխոզի երեք ավտոմեքենաները նորոգված և պատրաստ են հացահատիկը մթերակայանները փոխադրելու համար։ Այդ աշխատանքը դրված է Գալուստ Մարգարյանի և Կարապետ Սաֆարյանի վրա։*

*Կոլխոզնիկները խոստացել են մինչև հուլիսի 25-ը ավարտել պետական պարտավորությունների կատարումը և նրանք իրենց խոստումը կկատարեն։*

---

ՕԳՆՈՒԹՅՈՒՆ ԱԳԻՏԱՏՈՐԻՆ

## ԱԳԻՏԱՑԻՈՆ-ՄԱՍՍԱՅԱԿԱՆ ԱՇԽԱՏԱՆՔԸ ԲԵՐՔԱՀԱՎԱՔԻ ԺԱՄԱՆԱԿ

*Մեր ռեսպուբլիկայի գյուղատնտեսական աշխատանքներում սկսվում է ամենալարված և պատասխանատու շրջանը — բերքահավաքը։ Բերքահավաքը կարևորագույն տնտեսական-քաղաքական կամպանիա է։ Այն ամփոփում է կոլխոզային գյուղացիության ամբողջ տարվա աշխատանքը, գյուղատնտեսության վերելքի համար մղվող պայքարի արդյունքը։*

*Առաջավոր կոլխոզների աշխատանքի փորձը ցույց է տալիս, որ տնտեսական խնդիրները միշտ հաջող են իրագործվում այնտեղ, որտեղ լավ է կազմակերպված ագիտացիոն-մասսայական աշխատանքը կոլխոզնիկների մեջ։ Ուստի բերքահավաքի նախապատրաստման ու անցկացման շրջանում պետք է ամենալուրջ ուշադրություն նվիրել մասսաների մեջ կատարվող ագիտացիոն աշխատանքի ծավալմանը։*

Ագիտատորներն իրենց ամենօրյա աշխատանքի հիմքում պետք է դնեն «Հետպատերազմյան ժամանակաշրջանում գյուղատնտեսության վերելքի միջոցառումների մասին» ՀամԿ(բ)Պ Կենտկոմի փետրվարյան պլենումի որոշման մեջ առաջադրված խնդիրների և ընկեր Ստալինին ուղղված նամակում մեր ռեսպուբլիկայի գյուղատնտեսության աշխատողների ստանձնած պարտավորությունների խոր պարզաբանումը, մոբիլիզացիայի ենթարկելով կոլխոզնիկներին և գյուղատնտեսության բոլոր աշխատողներին՝ այդ խնդիրները պատվով կատարելու համար։

Բերքահավաքի հենց սկզբից ագիտացիոն-մասսայական ամբողջ աշխատանքը պետք է փոխադրվի դաշտ՝ բրիգադա, օղակ։ Ագիտացիոն աշխատանքը պետք է դառնա ավելի կոնկրետ և նպատակասլաց։ Պետք է յուրաքանչյուր կոլխոզնիկի և կոլխոզնիկուհու, ՄՏԿ-ների ու սովխոզների յուրաքանչյուր աշխատողի գիտակցությանը հասցնել այն, որ գյուղատնտեսության վերելքը և աշխատավորների նյութական բարեկեցության բարձրացումը կախված է առաջին հերթին հենց իրենց՝ աշխատավորների ազնիվ ու անձնվեր աշխատանքից, նրանց



ջանքերից, կազմակերպվածությունից և կարգապահությունից։

Պարզաբանելով ՀամԿ(բ)Պ Կենտկոմի փետրվարյան պլենումի որոշումը, ագիտատորները պետք է կարողանան կոլխոզային գյուղացիության բոլոր ուժերն ու ամբողջ եռանդը ուղղել մեկ բանի— ամենակարճ ժամկետներում և անկորուստ անցկացնել բերքահավաքը։ Յուրաքանչյուր կոլխոզնիկի, ՄՏԿ-ների ու սովխոզների յուրաքանչյուր աշխատողի գիտակցությանը պետք է հասցնել ընկեր Ստալինի այն ցուցումը, որ «Բերքահավաքը սեզոնային գործ է և նա սպասել չի սիրում։ Բերքը ժամանակին հավաքեցիր— կշահե՛ս, ուշացրիր բերքահավաքը— տանո՛ւլ կտաս»։

Ագիտատորի աշխատանքը ավելի մեծ հաջողություն կունենա այն դեպքում, եթե նա իր զրույցները սերտորեն կապում է կոլխոզի, բրիգադայի, օղակի առջև կանգնած կոնկրետ խնդիրների հետ։ Ուստի ճիշտ են վարվում այն ագիտատորները, որոնք ընդհանուր-քաղաքական թեմաների վերաբերյալ իրենց զրույցների հետ միաժամանակ զրույցներ են անցկացնում նաև արտադրական հարցերի շուրջը— բերքահավաքի կազ-

մակերպման, կոլխոզնիկների աշխատանքի հաշվառման ու վարձատրման, նրանց աշխատանքի լրացուցիչ վարձատրության, բերքը հրդեհից ու հափշտակումից պահպանելու, կորուստների դեմ պայքար կազմակերպելու, պետության հանդեպ ունեցած պարտավորությունները ճիշտ ու ժամանակին կատարելու մասին և այլն։

Ագիտացիոն աշխատանքի ամենատարածված ձևերից մեկը կենտրոնական և տեղական թերթերի նյութերի հիման վրա զրույցներ անցկացնելն է։ Թերթում ագիտատորը կարող է գտնել չափազանց հարուստ նյութ ագիտացիոն աշխատանքի համար։

Բերքահավաքի ընթացքում գյուղում կատարվող ագիտացիոն աշխատանքի կարևորագույն խնդիրն է մասսայական սոցիալիստական մրցության կազմակերպումը։ Ագիտատորը սոցիալիստական մրցության կազմակերպիչն է, իսկ սոցիալիստական մրցությունը՝ կոլխոզային գյուղացիության սխրագործությունների աղբյուրն է, նա լավագույն միջոցն է կոլխոզի աշխատավորությանը մոբիլիզացնելու և կոլխոզային դաշտերի առատ բերքն անկորուստ հավաքելու համար։



Ագիտատորի խնդիրն է գյուղի աշխատավորներին լայնորեն պարզաբանել սոցիալիստական մրցության նպատակները, նրա հսկայական քաղաքական ու տնտեսական նշանակությունը։ Պետք է կոլխոզնիկների և կոլխոզնիկուհիների, գյուղատնտեսության բոլոր աշխատողների մեջ պարզաբանել ՍՍՌՄ Գերագույն Սովետի Նախագահության հրամանագիրը՝ «Ցորենի, տարեկանի, եգիպտացորենի, շաքարի ճակնդեղի և բամբակի բարձր բերք ստանալու համար կոլխոզնիկներին, ՄՏԿ-ների և սովխոզների աշխատողներին Սոցիալիստական Աշխատանքի Հերոսի կոչում շնորհելու և ՍՍՌՄ շքանշաններով ու մեդալներով պարգևատրելու մասին»։

Սոցիալիստական մրցության մեջ հատուկ ուշադրություն պետք է նվիրել այն պարտավորությունների կատարմանը, որ Հայաստանի գյուղատնտեսության աշխատողները ստանձնել են մեծ Ստալինին ուղարկած իրենց նամակի մեջ։ Պետք է հասնել այն բանին, որ մրցության յուրաքանչյուր մասնակից կատարի և գերակատարի իր պարտավորությունները, ակտիվ կերպով պայքարի իր կոլխոզի, բրիգադայի, օղակի պատվի համար։

Ագիտատորը պետք է տեղյակ լինի ըստանձնած պարտավորությունների կատարման ընթացքին, վերահսկի և ստուգի պարտավորությունների կատարումը, իմանա կոլխոզի, բրիգադայի, օղակի աշխատանքային առօրյան, գիտենա առաջավորներին ու ետ մնացողներին և այդ բոլորը հմտորեն օգտագործի իր զրույցների մեջ։ Առանց դրան ագիտատորի զրույցը չի հասնի իր նպատակին, կլինի անհետաքրքիր։

Սոցիալիստական մրցության ծավալման կարևորագույն պայմանն է առաջավոր կոլխոզնիկների փորձի լայն տարածումը։ Պետք է կոլխոզնիկների հետ բրիգադայում, օղակում սիստեմատիկաբար քննության առնել սոցմրցմամբ ստանձնած պարտավորությունների կատարման ընթացքը։ Կարևոր նշանակություն ունի գյուղատնտեսության առաջավորների զրույցների կազմակերպումն իրենց աշխատանքի մեթոդների մասին այն բրիգադաներում և օղակներում, որոնք հետ են մնում պարտավորությունների կատարման մեջ։ Դրանով կօգնենք հետ մնացողներին՝ հասնելու առաջավորների մակարդակին։

Ագիտացիոն աշխատանքի մեջ կարևոր



տեղ է գրավում ցուցադրական ագիտացիան։ Անհրաժեշտ է յուրաքանչյուր կոլխոզում, սովխոզում և ՄՏԿ-ում ունենալ «Սոցիալիստական մրցության ցուցանիշների տախտակ», որը սիստեմատիկ կերպով արտացոլի բրիգադաների ու օղակների միջև տեղի ունեցող մրցության ընթացքը։ Մրցության ընթացքը լայնորեն լուսաբանելու միջոցներ են պատի թերթերը, «Իլյիչովկաները» և «Կայծակ»-թերթիկները։

Այս տարվա գարնանացանի ընթացքում մեր ռեսպուբլիկայի մի շարք կոլխոզներում կիրառվեց հետաքրքիր մի փորձ, երբ կազմակերպում էին այսպիսի մակագրությամբ տախտակներ՝ «Ո՞վ է այսօր առջևում և ո՞վ է ետ մնում»։ Այդ պրակտիկան պետք է կիրառել նաև բերքահավաքի աշխատանքների ընթացքում։

Առաջավորներին խրախուսելու տարածված ձևերից են «Պատվո տախտակ»-ը, փոխանցիկ կարմիր դրոշը, կարմիր դրոշակները և այլն։

Բայց, պետք է խուսափել մրցության

լուսաբանմանը ձևական մոտեցում ունենալուց, երբ կոլխոզում կան և «Մրցության տախտակ» և «Պատվո տախտակ», սակայն դրանք դատարկ են լինում, նրանց վրա չի արտացոլվում սոցիալիստական մրցության ընթացքը, չեն գրվում գյուղատնտեսության առաջավորների ու ստախանովականների անունները, չեն փակցվում նրանց նկարները։

Բերքահավաքի ընթացքում կոլխոզնիկների կուլտուրական սպասարկումը նույնպես պետք է փոխադրվի դաշտ, ուր կենտրոնացած է լինում գյուղի կյանքը։ Այստեղ էլ մեծ անելիքներ ունեն ագիտատորները։ Նրանց նախաձեռնությամբ կոլխոզնիկների համար անհրաժեշտ է կազմակերպել համերգային ու թատերական բրիգադների, գեղարվեստական ինքնագործունեության խմբակների ելույթներ, ցուցադրել կինոնկարներ և այլն։

Հայկական ՍՍՌ Գերագույն Սովետի ընտրությունների ժամանակ, ինչպես նաև գարնանացանի ընթացքում գյուղական ագիտատորները կուտակել են մասսաների մեջ կատարվող ագիտացիոն-մասսայական



աշխատանքի մեծ փորձ։ Այդ փորձը պետք է լայնորեն օգտագործվի նաև բերքահավաքի աշխատանքների ընթացքում։

Բերքահավաքը ժամանակին և անկորուստ անցկացնելը, ընկեր Ստալինին ուղարկված նամակի մեջ Սովետական Հայաստանի կոլխոզնիկների և կոլխոզնիկուհիների,ՄՏԿ-ների ու սովխոզների աշխատողների և գյուղատնտեսության մասնագետների ստանձնած պարտավորությունները պատվով կատարելը գյուղատնտեսության բոլոր աշխատողների, այդ թվում նաև ագիտատորների ու պրոպագանդիստների ամենաառաջնահերթ և պատվավոր խնդիրն է։

Ա. ՔՈԹԱՆՋՅԱՆ
Բ. ԼԱԼԱՅԱՆ

# ԲԵՐՔԸ ԿՀԱՎԱՔԵՆՔ ԱՆԿՈՐՈՒՍՏ

ՀամԿ(բ)Պ Կենտկոմի փետրվարյան պլենումի որոշման կապակցությամբ ագիտատոր Հայկ Բաբայանը մեր բրիգադայում զրույց էր անցկացնում։ Զրույցի թեման էր «Ծավալենք սոցիալիստական մրցությունը հանուն բարձր բերքի»։ Նա իր զրույցում նշեց, որ Սոցիալիստական Աշխատանքի Հերոս Մարիամ Մարտիրոսյանի աշխատանքի օրինակին պետք է հետևի ամեն մի կոլխոզնիկ, նրա նման պետք է պայքարի բարձր բերքի համար, նրա նման առաջավոր լինի մրցության մեջ։

Ագիտատորի զրույցից հետո ես խոսք վերցրի և ասացի, որ բոլոր հնարավորությունները ճիշտ օգտագործելու և աշխատանքը լավ կազմակերպելու դեպքում հնարավոր է ստանալ այնքան բերք, որքան ստացել է կոլխոզային դաշտերի հերոսուհին։



Ելույթներ ունեցան նաև մեր բրիգադայի մի շարք կոլխոզնիկներ, որոնք կոնկրետ պարտավորություններ վերցրին բարձր բերք ստանալու համար։ Մեր բրիգադան սոցիալիստական մրցության պայմանագիր կնքեց նույն կոլխոզի 7-րդ բրիգադայի հետ։ Պայմանագրում մենք նշեցինք և խոսք տվինք, բրիգադայի ունեցած 220 հեկտար հողամասից ստանալ 30 տոկոսով ավելի բերք, քան նախատեսված է պետական պլանով, իսկ «Միջին» և «Ջրաղացի գլուխ» կոչվող հողամասերի 17 հեկտար աշնանացան ցորենի յուրաքանչյուր հեկտարից ստանալ 30 ցենտներ բերք։

Բարձր բերք ստանալու համար երկար և համառ աշխատանք է պահանջվում։ Մեր բրիգադան դեռ անցյալ տարվանից է դրել բարձր բերքի հիմքը։ 1946 թվականին մենք վաղ ցել արինք։ Կատարեցինք նաև կրկնավար, որից հետո, ագրոկանոնների համաձայն ցանեցինք հողամասը։ Նախքան վարը ես փորձված և տարեց կոլխոզնիկների խորհրդով անվանի ոչխարապահ Խաչատուր Խունցին խնդրեցի, որ կոլխոզի 5.000 ոչխարը 20 գիշեր մեր հողամասում պահի։ Հովիվը չմերժեց։ Այդ բանը զգալիորեն նպաստեց հողի պարարտացմանը։

17 հեկտարի ցանքը մենք կատարեցինք ընտիր սերմացուով։ Սերմացուի ընտրությունը կատարեցինք այսպես։ Բրիգադայի անդամները, գլխավորապես պատանիները, հնձած ցորենի հասկերի ծայրամասերը մկրատով կտրեցին ու առանձնացրին, որը մենք առանձին կալսեցինք, իսկ հասկի մնացած մասը, որն ավելի առողջ ու ավելի լեցուն հատիկներ ուներ, կալսեցինք առանձին և պահեցինք որպես սերմացու։ Սերմացուի մեծ մասը մենք այդպես ընտրեցինք։ Փորձը ցույց տվեց, որ այդպես ընտրած սերմացուն ավելի առողջ է լինում և լավ է ծլում ու աճում։

Երբ գարունը բացվեց աշնանացանը հրաշալի վիճակում էր, և մենք այն ժամանակին զիգզագեցինք։

ՍՍՌՄ Գերագույն Սովետի Նախագահության հրամանագիրը՝ բարձր բերք ստանալու համար Սոցիալիստական Աշխատանքի Հերոսի կոչում շնորհելու և ՍՍՌՄ շքանշաններով ու մեդալներով պարգևատրելու մասին, մեծ խանդավառություն առաջացրեց կոլխոզնիկների մեջ։ Երբ մենք քննում էինք մեծ Ստալինին ուղարկվող նամակը,



ամբողջ բրիգադայով հատատուն խոսք տվեցինք 17 հեկտար տարածության յուրաքանչյուր հեկտարից անպայման ստանալ 30 ցենտներ հացահատիկ։ Հատուկ խնամքով սկսեցինք ցանքերին սնուցում տալ։ Որերս կոլխոզում առաջինն ավարտեցինք երկրորդ քաղհանը։ Բրիգադայի անդամները հսկում են ցանքերի պահպանմանը և պայքար են կազմակերպում դաշտային վնասատուների— մկների դեմ։

Աշնանացանը բարձրացել է ու փարթամորեն աճել, սկսել է խողովակակալումը։ Այդ մեզ հրճվանք է պատճառում և նոր լիցք հաղորդում հետագա աշխատանքի համար։

Ցանքերի խնամքին զուգընթաց մենք պատրաստվում ենք բերքահավաքին։ Նորոգվում են և շուտով բոլոր մեքենաներն ու գործիքները պատրաստ կլինեն բերքահավաքի համար։ Արդեն կազմակերպել ենք բերքահավաքի օղակներ, որոնցից յուրաքանչյուրը որոշակի գիտե իր անելիքները բերքահավաքի ժամանակ և խնամքով նախապատրաստվում է գյուղատնտեսական

աշխատանքների այդ ամենապատասխանատու շրջանը կազմ ու պատրաստ դիմավորելու համար։

*Մենք ոչ մի ջանք չենք խնայի բերքահավաքը կազմակերպված և անկորուստ, սեղմ ժամկետում անցկացնելու համար, խոսք ենք տալիս դաշտում չթողնել ոչ մի հասկ և առաջին իսկ կալից կատարել պետական պարտավորությունները։*

ՆԵՐՍԵՍ ՂՈԼՈՒՆՑ
Գորիսի շրջանի Տեղ գյուղի կոլխոզի
3-րդ բրիգադայի բրիգադիր

ԿԱՐԴԱ ԲԱՐՁՐԱՁԱՅՆ

---

# ՆՐԱՆՔ ԿԱՏԱՐՈՒՄ ԵՆ ԱՌԱՋՆՈՐԴԻՆ ՏՎԱԾ ԽՈՍՏՈՒՄԸ

## 1. ԱՌԱՋԱՎՈՐ ՇԵՐԱՄԱՊԱՀԸ

*Տեղ գյուղի կոլխոզնիկուհի Վարդանուշ Բաբայանը սիրում է շերամապահությունը, որով զբաղվում է 1939 թվականից։ Այդ ժամանակվանից սկսած՝ նա ամեն տարի Գորիսի շրջանում բոլորից շատ է շերամի որդեր աճեցնում և բոլորից շատ է բոժոժ հանձնում պետությանը։ Դեռ 1939 թվականին նա երկու տուփ գրենայից ստացավ 150 կիլոգրամ բոժոժ, նախատեսված 50 կիլոգրամի փոխարեն։*

*Ազնիվ ու քրտնաջան աշխատանքի համար, ՍՍՌՄ կառավարությունը 1939 թվականին Վարդանուշ Բաբայանին պարգևատրեց «Աշխատանքային արիության համար» մեդալով և պետության հաշվին էքսկուրսիայի ուղարկեց Սովետական Միության մայրաքաղաքը՝ Մոսկվա։*

Վարդանուշ Բաբայանն սկսեց ավելի եռանդով զբաղվել շերամապահությամբ ու տարեց-տարի ավելի բարձր բերք ստանալ։ 1946 թվականին նա մեկ տուփ գրենայից ստացավ արդեն 110 կիլոգրամ բոժոժ։

Տեղ գյուղում 50 կոլխոզնիկներ են ըզբաղվում շերամապահությամբ, որոնցից առաջավորն է Վարդանուշ Բաբայանը։

Երբ քննարկվում էր ընկեր Ստալինին ուղարկվելիք նամակը, Բաբայանը խոսք տվեց մեկ տուփ գրենայից սահմանված 43 կիլոգրամ բոժոժի փոխարեն ստանալ 120 կիլոգրամ։ Իր խոսքը նա անպայման կկատարի։ Այդ է ցույց տալիս նրա աշխատանքը։

Առաջավոր շերամապահը հատուկ խնամք ունի դեպի շերամի որդերը, նրանց միշտ կերակրում է թթենու թարմ տերևներով, որդերի տակ փռած թղթերը փոխում է երկու օրը մեկ անգամ։ Որդերի համար նա պատրաստել է լավ դարակներ և այն սենյակը, որտեղ պահվում են որդերը, ամեն ինչ մաքուր է, կոկ, կարգին։ Նա շատ լավ գիտե որդերին կերակրելու կարգը, որից կախված է կշռով շատ բոժոժ ստանալը։ Նա որդերին առաջին հասակի շրջանում



կերակրում է 6—7 անգամ, երկրորդ հասակում՝ 4—5 անգամ, երրորդ հասակում՝ 3—4 անգամ, իսկ վերջին շրջանում՝ որքան պահանջվի։

Որդերին լավ կերակրելը և արագ աճեցնելը դեռ բոլորը չէ։ Այն սենյակում, որտեղ պահվում են որդերը, անհրաժեշտ է ստեղծել և պահպանել նորմալ ջերմություն։ Բաբայանն սկզբնական շրջանում սենյակում վառարան էր դրել, տաքացնում էր սենյակը և հսկում, որ միջին ջերմաստիճանը 22—23-ից ավելի կամ պակաս չլինի։ Նվազ որդերին Բաբայանը ջոկում է և նրանց հատուկ խնամքով է կերակրում։

Այս բոլորից հետո պատահական չէ, որ Բաբայանի մոտ որդերի աճման պրոցեսը տևում է 28—30 օր, իսկ մյուս շերամապահների մոտ՝ 40—45 օր։

Անվանի շերամապահ Վարդանուշ Բաբայանի աճեցրած շերամի որդերը արդեն հասունացել են և սկսել են բոժոժ հյուսել. Մի քանի օրից հետո Բաբայանը շրջանում առաջինը կհանձնի բարձրորակ բոժոժ և իր տված խոստման համաձայն ձեռնամուխ կլինի երկրորդ տուփ գրենայի աճեցմանը։

## 2. ԱՆԱՍՆԱԲՈՒԾՈՒԹՅԱՆ ՎԱՐՊԵՏՆԵՐԸ

*Գորիսի շրջանի Խնձորեսկ գյուղի կոլխոզի ոչխարաբուծական ֆերմայի աշխատողները մտնելով Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի 30-ամյակի պատվին ծավալված սոցիալիստական մրցության մեջ, մրցման հրավիրեցին Տեղ և Խանածախ գյուղերի ոչխարաբուծական ֆերմաների աշխատողներին։*

*Խնձորեսկցիները խոսք տվին մինչև 1948 թվականի հունվարի մեկը ոչխարների գլխաքանակը հասցնել 12.000-ի՝ նախատեսված 10.500-ի փոխարեն, մայր ոչխարների թիվը 5250-ից հասցնել 5427-ի, յուրաքանչյուր մայր ոչխարից ստանալ մեկ գառ ու մինչև սեպտեմբերի մեկը յուրաքանչյուր գառի քաշը հասցնել 40 կիլոգրամի, յուրաքանչյուր մայր ոչխարից ստանալ 35 լիտր կաթ՝ 30-ի փոխարեն, երկու և կես կիլոգրամ բուրդ՝ նախատեսված 1,9-ի փոխարեն, ոչ մի մայր ոչխար չթողնել ստերջ, ամառային և ձմեռային արոտավայրերում ոչ մի կորուստ չտալ, ձմեռանոցում ամբարել 12,000 ցենտներ խոտ և այլն։*

*Վերցրած պարտավորությունները պատվով կատարելու համար, ֆերմայի աշխա-*



*տողները ուժ և եռանդ չեն խնայում։ Հատկապես աչքի է ընկնում ֆերմայի վարիչ Սամվել Խաչատրյանի, բրիգադիրներ Արտաշես Ակլունցի, Սուրեն Գիլավյանի, հովիվ-կթվորներ Ավագ Աթաբեկյանի, Ներսես Բեկլարյանի, կոլխոզնիկ Հակոբ Թախունցի և ուրիշների ժրաջան, հոգատար աշխատանքը, որոնք ամեն ինչ անում են իրենց ֆերման կազմակերպչորեն ամրապնդելու ու տնտեսապես հզորացնելու համար։*

*Փաստերը պերճախոս են և ցույց են տալիս, որ ֆերմայի աշխատողները պատվով կկատարեն իրենց խոստումը, մրցությունից դուրս կգան հաղթանակով։*

*Ոչխարները դեռ պետք է կթվեն մինչև օգոստոսի վերջը, իսկ ֆերման առ 1-ը հունիսի յուրաքանչյուր ոչխարից արդեն ստացել է 26 լիտր կաթ։ Ֆերմայի աշխատողները վստահ են, որ մինչև կթի վերջը իրենց խոստացած 35 լիտր կաթից էլ շատ կստանան։*

*Ֆերմայի առաջին բրիգադան, որի բրիգադիրն է Ա. Ակլունցը, յուրաքանչյուր ոչխարի առաջին խուզից արդեն ստացել է 1,8 կիլոգրամ բուրդ, իսկ երկրորդ խուզը կազմակերպվելու են օգոստոսի վերջերին։ Երկրորդ բրիգադան, որի բրիգադիրն է*

Ս. Գիլավյանը, անցնելով առաջինից, յուրաքանչյուր ոչխարի առաջին խուզից ստացել է 1,95 կիլոգրամ բուրդ։ Ս. Գիլավյանի բրիգադայի՝ Գուրգեն Առուշանյանի օղակն առաջին խուզից լրիվ կատարել է բրդի մթերման տարեկան պլանը և որպես լրացուցիչ վարձատրություն ստացել է 11 կիլոգրամ բուրդ։

Խոստացած 12 հազարի փոխարեն ոչխարների գլխաքանակը արդեն առ 1-ը հունիսի հասցված է 11.610-ի, իսկ նոյեմբեր-դեկտեմբեր ամիսներին սպասվում է ևս 3.500 գլուխ։

Կոլխոզը կաթի մթերման պետական պարտավորությունը կատարել է 100 տոկոսով, իսկ բրդինը՝ գերակատարել է։

Մրցության մեջ առաջավոր լինելով, ֆերմայի աշխատողները ոչ միայն ճիշտ և ժամանակին կատարում են պետության հանդեպ իրենց պարտավորությունները, այլև ստեղծում են մթերքների առատություն կոլխոզում, բարձրացնում են աշխօրի արժեքը։

Ի. ԽԱՉԱՏՐՅԱՆ

## ՋՐՈՒՅՑՆԵՐ ՍՏԱԼԻՆՅԱՆ ՀՆԳԱՄՅԱԿԻ ՄԱՍԻՆ

### 1. ՎԵՐԱԾՆՎԱԾ ԴՆԵՊՐՈԳԷՍԸ

Սովետական ժողովրդի պարծանք Դնեպրի հիդրոէլեկտրակայանը (Դնեպրոգէսը) մինչև պատերազմը ամենահզոր էլեկտրակայանն էր ոչ միայն ՍՍՌՄ-ում, այլ և Եվրոպայում։

Գերմանական բարբարոսներն ամեն բան արին Դնեպրոգէսն ավերելու և նրա վերականգնումը անհնարին դարձնելու համար։ Նրանք պայթեցրին ամբարտակի սյուների կեսից ավելին, նրա ջրհոսման մասի կամարներից շատերը, կամուրջները, շլյուզները, տուրբիններն ու գեներատորները, շենքի ստորջրյա մասը։ Ամբարտակի ձախափնյա մասում հիտլերականները թողել էին 500 կիլոգրամանոց ռումբեր և մի քանի տոննա պայթուցիկ նյութ, նահանջի ժամանակ ամբարտակը պայթեցնելու համար։ Բայց ամբարտակի ձախափնյա մասը հիմնովին քանդել թշնամուն չհաջողվեց։ Սովե-

տական սպա Կուլուզովը կարողացավ ժամանակին կտրել լարը, և պայթյունը կանխվեց։

Ազատարար ռազմիկներն առաջ էին շարժվում, իսկ այդտեղ, Դնեպրի ափին արդեն սկսվեցին վերականգնման աշխատանքները։ Դնեպրոգէսի առաջին կառուցողները նորեկներին պատմում էին Դնեպրի էլեկտրակայանի ստեղծման հրաշագործ պատմությունը։

Վաղուց ի վեր մեր ժողովուրդը երազում էր Դնեպրի անհնազանդ սահանքների ուժն օգտագործելու մասին։ Բայց միայն բոլշևիկները, սովետական ժողովուրդն ի վիճակի եղան իրագործելու այդպիսի մի համարձակ ձեռնարկում։

Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի հաղթանակից հետո Վլադիմիր Իլյիչ Լենինը կազմակերպեց երկրի էլեկտրիֆիկացման աշխատանքը։ Նրա ղեկավարությամբ մշակվեց Սովետական Ռուսաստանի էլեկտրիֆիկացման գլխավոր պլանը։ «Կոմունիզմը,— ասում էր Վլադիմիր Իլյիչը,— այդ Սովետական իշխանությունն է, գումարած ամբողջ երկրի էլեկտրիֆիկացիան»։

1927 թվականին Հոկտեմբերյան Ռևոլյու-



ցիայի 10-ամյակի օրը դրվեց Դնեպրոգէսի հիմքը։ 1932 թվականի հոկտեմբերին հիդրոկայանի կառուցողների կոլեկտիվը կենսագործելով Լենինի-Ստալինի պարտիայի կամքը, ժողովրդի կամքը Ուկրաինայի տափաստաններում հզոր էներգետիկ բազա ստեղծելու մասին, ազդարարեց երկրին ու աշխարհին՝ «Հոսանքը տրվա՛ծ է։ Դնեպրը գործում է սոցիալիզմի համար»։

Դնեպրի էլեկտրակայանը կոչվեց Լենինի անունով։ Աշխարհի մեծագույն ամբարտակը, որի մեջ ներդրված էր մոտ երկու միլիոն տոննա բետոն, երկաթ ու պողպատ, մի ըսքանչելի հիդրոտեխնիկական կառուցվածք էր։ Հզոր գեներատորների մեջ Դնեպրի ջրային ուժը վերածվում էր էլեկտրական էներգիայի։

Դնեպրոգէսն ուներ 9 տուրբին, յուրաքանչյուրը 90 հազար ձիու ուժ կարողությամբ, իսկ էլեկտրակայանի ընդհանուր կարողությունը կազմում էր 560 հազար կիլովատ։

Մինչև պատերազմը Դնեպրոգէսը սոցիալիստական արդյունաբերությանը տվել էր 16 միլիարդ կիլովատ-ժամ ամենաէժան

էլեկտրոէներգիա: Դնեպրի էլեկտրոէներգիայի յուրաքանչյուր կիլովատ-ժամն արժեր կես կոպեկ:

Դնեպրոգէսի շուրջը կառուցվեցին տասնյակ խոշոր գործարաններ: «Զապորոժստալ» խոշորագույն մետալուրգիական կոմբինատը, ալյումինի, էլեկտրոդի գործարանները և շատ այլ ձեռնարկություններ սնվում էին Դնեպրի էլեկտրակայանի էներգիայով: Նրա էներգիան էլեկտրալարերի միջոցով հասնում էր մինչև Դոնբասի ածխահանքերն ու Դնեպրոպետրովսկի գործարանների ցեխերը: Մերձդնեպրյան շրջանի կոլխոզներում սկսեցին կիրառել էլեկտրակալսումը, կովերի էլեկտրական կիթը: Էլեկտրականության միջոցով էին տաքացվում ջերմոցները, ոռոգվում անջրդի հողերը:

Այսպիսին էր Դնեպրի էլեկտրակայանը— մեծ աշխատանքների ստալինյան պլանի մարմնացումը, երկրի զարդը, սովետական ժողովրդի պարծանքը:

Ժողովրդի դյուցազնական ստեղծագործությունը— Դնեպրոգէսը անհնարին էր ոչնչացնել: Կարելի էր ոչնչացնել նրա շեն-



քը, բայց Սովետական պետության հզորության փառապանծ սիմվոլ Դնեպրոգէսը շարունակում էր կենդանի մնալ սովետական մարդկանց սրտերում:

Ուկրաինայից գերմանական զավթիչներին վռնդելուց անմիջապես հետո սկսվեց Դնեպրի Լենինի անվան հիդրոկայանի վերածննդման հերոսական պատմությունը:

Մեր հողում դեռ մարտեր էին մղվում, երբ 1944 թվականի փետրվարի 23-ին Պաշտպանության Պետական Կոմիտեն որոշեց սկսել Դնեպրոգէսի վերականգնման նախապատրաստությունը: Հուլիսի 7-ին ձեռնարկվեցին վերականգնման աշխատանքները:

Դնեպրոգէսի վերականգնմանն օգնում էր ամբողջ երկիրը. Սովետական Միության բոլոր անկյուններից այստեղ էին գալիս կառուցողները: Մոսկվան և Վլադիվոստոկը, Լենինգրադը և Թբիլիսին, Սվերդլովսկը և Գորկին, Բաքուն և Կիևը ուղարկում էին մարդիկ, շինանյութ, մեքենաներ ու գեներատորներ: Մոսկվայի Ս.Մ. Կիրովի անվան «Դինամո» գործարանը Դնեպրոգէսին տվեց անհրաժեշտ բարդ սարքավորում,

որ առաջ ներմուծվում էր արտասահմանից։

Մինչև 1946 թվականի աշնան սկիզբը հիմնականում ավարտվեցին վերականգնողական աշխատանքները։ Սկսվեց տուրբինի և առաջին ագրեգատի մոնտաժը։

1946 թվականի նոյեմբերի 7-ին Դնեպրոգէսը վերականգնողների կոլեկտիվը կատարեց իր նախահոկտեմբերյան պարտավորությունը։

Երկու տարուց էլ պակաս ժամանակամիջոցում կառուցողները նորից էլեկտրական էներգիա հաղորդեցին Ուկրաինայի արդյունաբերությանը։ 1947 թվականի հունվարի կեսերին լրիվին ավարտվեց առաջին ագրեգատի մոնտաժը։ Հունվարի 17-ին Դնեպրի ջրերը նորից սկսեցին պտտեցնել տուրբինը, Դնեպրի ուժը նորից հոսեց լարերի միջով։

1947 թվականի մարտի 3-ին դնեպրոշինցիների կոլեկտիվը ընկեր Ստալինին ռապորտ տվեց, որ Դնեպրոգէսի առաջին ագրեգատը՝ 72 հազար կիլովատ կարողությամբ,էլեկտրոէներգիա է հաղորդում Մերձդնեպրյան շրջանի արդյունաբերությանը։

Մերձդնեպրյան շրջանի, Կրիվոյ Ռոգի,



Դոնբասի արդյունաբերական ձեռնարկությունները նորից ստացան իրենց հիմնական էներգետիկ բազան։

«Պարտիան և Կառավարությունը հատուկ նշանակություն են տալիս մեր ժողովրդի ստեղծագործությունն ու պարծանքը հանդիսացող Դնեպրի հիդրոէլեկտրակայանի ամենաարագ վերականգնմանը»,— գրում էր ընկեր Ստալինը Դնեպրոգէսի կառուցողներին ուղարկած ողջույնի հեռագրի մեջ։

Ընկեր Ստալինի գովասանքով թևավորված, Դնեպրոգէսի կառուցողները նոր ուժով շարունակում են աշխատանքը։

1947 թվականի ընթացքում կավարտվի երկրորդ և երրորդ ագրեգատների մոնտաժը, ամբարտակի, շլյուզների վերականգնումը։ 1947 թվականի նավագնացության սեզոնում նորից բացվեց միջանցիկ նավարկությունը Դնեպրի վրայով։

Դնեպրի հիդրոկայանի լրիվ վերականգնումը մոտիկ ապագայի խնդիր է։ Երբ ավարտվի ողջ վիթխարի վերականգնողական

աշխատանքը, Դնեպրոգէսը կդառնա է՛լ ավելի հզոր էլեկտրակայան, քան մինչև պատերազմն էր։ Նրա կարողությունը կավելանա 90 հազար կիլովատով։

Դնեպրի ջրերը յուրաքանչյուր տարի Կրիվոյ Ռոգի, Դոնբասի և Դնեպրոպետրովսկի գործարաններին ու ֆաբրիկաններին, հանքահորերին կտան 100 միլիոն կիլովատ ժամով ավելի էներգիա, քան տալիս էին մինչև պատերազմը։

Այսպես է սովետական մարդկանց կամքը ու եռանդը հաղթում տարրերքին։ Դընեպրի ջրերը նորից ծառայում են ստեղծաբար ժողովրդին, հաղթող ժողովրդին։

---

## 2. ՊԱՐԱՐՏԱՆՅՈՒԹ ԳՅՈՒՂԱՏՆՏԵՍՈՒԹՅԱՆԸ

Ստալինյան նոր հնգամյակի նորակառույցներից մեկը ևս մտավ գործող ձեռնարկությունների շարքը։ Սկսվել է սուպերֆոսֆատի արտադրությունը Ալավերդու քիմիական գործարանի սուպերֆոսֆատի ցեխում։

Համաշխարհային հռչակ են վայելում Կոլա թերակղզում գտնվող Խիբինի ապատիտի հանքերը, որոնք հայտաբերվել են սովետական իշխանության օրով և որոնց պաշարը հսկայական չափերի է հասնում։ Ահա այդ հեռավոր Խիբինից է ստացվում ապատիտը, որը հումք և ելանյութ է արժեքավոր պարարտանյութ՝ սուպերֆոսֆատ ստանալու համար։

... Գնացքը կանգ է առնում Ալավերդի կայարանում. այն ապատիտ է բերել։ Վա-

գոններից ապատիտը դատարկվում է նոր կառուցված պահեստը, ապա տրանսպորտյորի միջոցով բարձրացվում է հատուկ աշտարակը, որտեղից ուղղվում է դեպի մեծ կամերան։ Այդ կամերայի մեջ է թափվում նաև ծծմբաթթուն, որ ստացվում է հենց Ալավերդում, պղնձի հանքաքարի մշակումից։

Ապատիտի և ծծմբաթթվի խառնուրդից էլ հենց ստացվում է հայտնի ֆոսֆորային պարարտանյութը կամ ինչպես ասում են սուպերֆոսֆատը։

Ստացված սուպերֆոսֆատը դարձյալ տրանսպորտյորի միջոցով փոխադրվում է մի այլ մեծ պահեստ, որտեղից գնացքը կարող է անմիջապես ընդունել պատրաստի պարարտանյութը։

Սուպերֆոսֆատը արժեքավոր պարարտանյութ է, որը մեծ չափով բարձրացնում է դաշտերի բերքատվությունը, արագացնում է բույսերի աճը։ Սուպերֆոսֆատով հողը պարարտացնում են գլխավորապես աշնանը, երբ վարից առաջ սուպերֆոսֆատի փոշին շաղ են տալիս դաշտի վրա և ապա վարում։ Սուպերֆոսֆատը նաև գործադրվում



է բամբակի և ճակնդեղի դաշտերին սնուցում տալու համար, որը կատարվում է կուլտիվացիայից առաջ։

Սուպերֆոսֆատի ցեխը գեղեցիկ է և յուրօրինակ։ Այն կառուցված է Արթիկի վարդագույն տուֆից։ Ցեխում ամեն ինչ մեխանիզացիայի է ենթարկված։

Սուպերֆոսֆատի ցեխը սոցիալիստական դաշտերը պարարտացնելու համար այս տարի պետք է արտադրի 10 հազար տոննա պարարտանյութ։

— Այդ պլանը մենք կկատարենք ու կգերակատարենք մինչև Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ Ռևոլյուցիայի 30-րդ տարեդարձի օրը,— ասում է ցեխի պետ Ի. Պավլովը։

Եվ դա կարելի՛։ Նորակառույցի բանվորները խանդավառությամբ են անցել աշխատանքի։ Մայիս ամսին նրանք իրենց պլանը կատարեցին 200 տոկոսով, արտադրելով ավելի քան 1000 տոննա սուպերֆոսֆատ։ Ֆեոդոր Սամարչեր, Լևոն Վախանելովը, Դավիթ Բադմանովը, Դանիկ Կիրակոսյանը ցեխի նշանավոր ստախանովա-

կաններից են։ Հայրենիք վերադարձած Ռուբեն Հովհաննիսյանը իր ընկերների հետ աշխատում է նորակառույցում և միշտ կատարում ու գերակատարում է իր պլանը։

Բայց նրանք որտե՞ղից սովորեցին սուպերֆոսֆատ ստանալը։

Նախքան նորակառույցի գործարկվելը մի խումբ բանվորներ ցեխի պետի հետ միասին մեկնեցին Օդեսա արտադրական պրակտիկայի։ Մեկ ամիս նրանք դիտեցին ու սովորեցին Օդեսայի սուպերֆոսֆատի գործարանում և երբ վերադարձան Ալավերդի, գործարկեցին սուպերֆոսֆատի ցեխն ու սկսեցին արտադրել արժեքավոր պարարտանյութի առաջին տոննաները։

Երկրին տալով արժեքավոր պարարտանյութ՝ սուպերֆոսֆատ ցեխի բանվորները պայքարում են կոլխոզային դաշտերի բերքատվությունը բարձրացնելու, ՀամԿ(բ)Պ Կենտրոնական Կոմիտեի փետրվարյան պլենումի որոշումը կենսագործելու համար։

---

## ՀՈՒԼԻՍ ԱՄՍԻ ՕՐԱՑՈՒՅՑ

1941 թ. հուլիսի 3.— Պաշտպանության Պետական Կոմիտեի Նախագահ ընկեր Ի. Վ. Ստալինի ռադիոելույթը։

1944 թ. հուլիսի 3.— Կարմիր Բանակի զորամասերը Բելոռուսական ՍՍՌ-ի մայրաքաղաք Մինսկը ազատագրեցին գերմանական զավթիչներից։

1944 թ. հուլիսի 13.— Կարմիր Բանակի զորամասերը Լիտվական ՍՍՌ մայրաքաղաք Վիլնյուսը ազատագրեցին գերմանական զավթիչներից։

1937 թ. հուլիսի 15.— Բացվեց Մոսկվա—Վոլգա ջրանցքը։

1917 թ. հուլիսի 16.— Բանվորների և զինվորների ելույթը Պետրոգրադում, որը վերածվեց փայլուն զինված ցույցի՝ «Ամբողջ իշխանությունը Սովետներին» լոզունգով։

1945 թ. հուլիսի 17.— Բացվեց երեք տերությունների՝ ՍՍՌՄ-ի, ԱՄՆ-ի և Մեծ Բրիտանիայի Բեռլինի կոնֆերենցիան։

1941 թ. հուլիսի 19.— ՍՍՌՄ Գերագույն Սովետի Նախագահության Հրամանագիրը ՍՍՌՄ ժո-





*ղովրդական Կոմիսարների Սովետի Նախագահ ընկեր Ի. Վ. Ստալինին ՍՍՌՄ Պաշտպանության Ժողովրդական Կոմիսար նշանակելու մասին։*

20 հուլիսի.— *Ֆիզկուլտուրնիկի Համամիութենական Օրը։*

1940 թ. հուլիսի 21.— *Լատվիայում, Լիտվայում և Էստոնիայում հռչակվեց սովետական իշխանություն։*

27 հուլիսի.— *ՍՍՌ Միության Ռազմա-Ծովային Նավատորմի օրը։*

1944 թ. հուլիսի 29.— *ՍՍՌ Միության Գերագույն Սովետի Նախագահության Հրամանագիրը Սովետական Միության Մարշալ Ի. Վ. Ստալինին «Հաղթանակ» շքանշանով պարգևատրելու մասին։*

1903 թ. հուլիսի 30.— *ՌՍԴԲՊ 2-րդ համագումարի բացումը։*

---

Պատասխանատու խմբագիր՝
Ա. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ

ՎՖ 02495, Պատվեր № 860, Տիրաժ 10.000.
Ստորագրված է տպագրության 1/VII 1947 թ.։

Հայկական ՍՍՌ Մինիստրների Սովետին կից Պոլիգրաֆ. և Հրատ. վարչության № 2 տպարան, Երևան